**1917** № 29—ՅՈՒԼԻՍԻ 30 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ



10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասարգեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.— Тифлисъ, „Амбавоберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Պէտք է գիտակցաբար վերաբերուել, Ս. Ցաւրութիւնեանցի.— Կառավարութեան տագնապը, Ալ. Մանուկեանի — Գրական ակնարկներ, Վ. Փափազեանի.— Թիֆլիսի քաղաք. ընտրութ. շուրջը, Ա. ք. Սարգիսեանի.— Ռուսական Բիւզանդիոն, Լ. Թիւթիւնճեանի.— Հայանպաստ շարժումը Անգլիայում (հայ որբերի ֆոնդը), Թարգմ. Ա. Սաֆեանի.— Ինչպէս է առեղծւում թշնամութիւնը հայ և թիւրք հարևանների միջև, Թիւրք. Թարգմ. Դ. Մանասեանի.— Պարսկաստան, Նրուանդի.— ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.— Էլի իմ մուսային, բանաստ. Վ. Միրաքեանի.— ՔՐՈՆԻԿՈՆ.— ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ.— ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ.

## ՊԷՏՔ Է ԳԻՏԱԿՑԱԲԱՐ ՎԵՐԱԲԵՐՈՒԵԼ

Այսօր Թիֆլիսում կատարուելու է քաղաքային ինքնավարութեան իրաւատուների ընտրութիւնը։

Այս ընտրութիւնը մեր քաղաքացիական առաջին գործողութիւնն է. սրանով է սկսւում դեմոկրատիկ կեանքը՝ հիմնուած մեծ յեղափոխութեան տուած սկզբունքների վրայ։

Քաղաքական կուսակցութիւնները՝ ամեն մէկը առանձին, վաղուց սկսել են աշխատել տեղական ազգաբնակութեան մէջ. նրանք արծարծում են իրենց ծրագիրը, գրաւում են համախոհներ, որպէս զի յաջողութիւն ունենան այսօրուայ ընտրութեանը։

Կուսակցութիւններից ոմանց դրօշակի վրայ նկատւում է ազգայնական նշան, իսկ միւսները, յայտարարելով իրենց միջազգային, առ երեւս խուսափում են ազգայնութիւնից։

Սակայն ծանօթանալով ի մօտոյ այս տեսակ կուսակցութիւնների գործունէութեան հետ, չի կարելի չընկատել, որ այդ կուսակցութիւններից և ոչ մէկն էլ ազատ չէ ազգայնական ձգտումներից՝ ինչ անուան տակ էլ լինի, ինչ միջազգային մեծ կոչումն էլ կրելիս լինի։ Եւ իրաւ, միթէ կարելի է հաւատալ, որ մի կուսակցութիւն, թէև իրեն միջազգային անուանող, երբ նա գտնւում է Կովկասում, երբ նա բաղկացած է Կովկասի ժողովուրդներից, երբ, վերջապէս, նա իր գործունէութեամբ սահմանափակուած է այս երկրում ապրող ազգերի մէջ, կարող է միանգամայն ազատ լինել այն միջավայրի ազդեցութիւնից, որը մինչև իր վերջին ծուծը շաղախուած է ազգայնութեան մէջ, որի ամեն մի երևոյթի միջով կարմիր թելի պէս անցնում է ազգայնական սկզբունքը, ազգայնական տեսակէտը։

Իրականութիւնը ցոյց է տալիս, որ ամեն մի կուսակցութեան մէջ նկատւում է տենդենցիա, ձգտումն դէպի այն ազգի շահերը, որի ներկայացուցիչները աւելի ուժեղ են, ղեկավարում և մեծամասնութիւն են կազմում կուսակցութեան մէջ։

Գուցէ հենց այդ երևոյթն էլ շատ բնական է մեր ժամանակուայ համար։

Անկասկած համամարդկային իդէալը աւելի բարձր է ազգային շահերից և ապագան պատկանելու է այդ իդէալին, բայց չէ՞ որ մինչև այդ վեհ գաղափարի ընդհանրացումը, դեռ բնաշրջման շատ աստիճաններ կան անցնելու։

Մինչև այդ իդէալին հասնելը, տակաւին գերիշխող է մնում ազգային գաղափարը, որի առաջ դէմ առայժմ չի կարելի չը խոնարհուել, մանաւանդ եթէ այդ գաղափարը հասկացուի լայն և առողջ մտքով։

Ազգայնութիւնը—առողջ դատողութեամբ—թելադրում է յարգանք և հաւատ դէպի միւս ազգերը, պահանջում է ներդաշնակութիւն և համերաշխութիւն ազգութիւնների մէջ յանուն ընդհանուր շահերի և բարօրութեան։

Ոչ մի ազգ չի կարող իրեն երջանիկ համարել, եթէ հարևան ազգերի հետ համերաշխ չէ, եթէ նա բարեկամական յարաբերութիւնների մէջ չէ նրանց հետ։

Այս սկզբունքը պէտք է լինի այն լուսատու փարոսը, որի ուղղութեամբ հարկաւոր է առաջ ընթանալ։

Այդ սկզբունքով պէտք է ղեկավարուել և ներկայ ընտրութեան ժամանակ։

Այս ընտրութեամբ մեր ժողովուրդը պէտք է ցոյց տայ իր քաղաքացիական հասունութիւնը։

Ընտրողը պէտք է դիմի ընտրութեան չը կաշկանդուած, ազատ, գիտակցաբար, լաւ ըմբռնելով խնդրի իմաստը, այն է՝ որ քաղաքը կարօտ է գիտակից, պարտաճանաչ, բարեխիղճ և աշխատանքի ընդունակ իրաւասուների։

Ամեն մի ընտրող, եթէ նա զգում է իրեն ազատ քաղաքացի, թող լաւ քննի թեկնածուների այն բազմաթիւ ցուցակները, որ կուսակցութիւնները յայտարարել են ժողովուրդի մէջ և թող իր ձայնը տայ այն ցուցակին, որի մէջ կը գտնի աւելի մեծ թուով կարող, քաղաքի ցաւերին ծառայելու պատրաստակամութիւն և ընդունակութիւն ունեցող անձինք։

Այդ տեսակէտից Ժող. Ազատ. և Հայ Ժող. միացեալ կուսակցութիւնների ներկայացրած համար 7 ցուցակում նշանակուած թեկնածուները, ամենից պատրաստուած և քաղաքային գործերին ամենից հմուտ անձնաւորութիւններ են։

Ս. Յարութիւնեանց

# ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՏԱԳՆԱՊԸ

Ամբողջ Ռուսաստանը այժմ երերումների և յեղաշրջումների մի անօրինակ կացութեան մէջ է։

Յեղափոխութիւնը կենսատու արեգակի նման ճառագայթեց երկրում, լուսաւորեց և տաքացրեց ճնշուած ժողովրդի սիրտը, բայց այդ արևը կամաց-կամաց տկարացաւ, իր շողերը սկսեցին ցրտանալ ու աղօտանալ։

Այդ բանը պատահեց ոչ թէ այն պատճառով, որ յեղափոխութեան արեգակը տկար լոյս ունէր, այլ այն պատճառով, որ այն սրտերը, որոնք պիտի լուսաւորուէին այդ արեգակից, ցուրտ էին և անպատրաստ։

Յեղափոխութեան սկզբից մինչև հիմա չըկարողացաւ կազմուել մի հաստատուն կառավարութիւն՝ ներկայացուցիչ երկրի բոլոր առողջ և օգտակար զանգուածների և արտայայտիչ՝ համայն ժողովրդի։ Ամեն անգամ փոփոխուեց կառավարութեան կազմը, ամեն անգամ առաջ եկաւ մինիստրական կրիզիսը և այդ բանը սոսկալիօրէն ազդեց առանց այն էլ հիւանդոտ և ուժասպառ ազգաբնակչութեան հոգեբանութեան։

Ժողովուրդը դարձաւ յոռետես յեղափոխութեան բարիքների հանդէպ, սկեպտիկ՝ իր ապագայի և ներկայի վերաբերմամբ։

Ծայրայեղ ըմբռնումների և հոգեբանութեան մի քաօս է ներկայացնում այժմ ամբողջ Ռուսաստանը։ Այդ քաօսին նպաստել է ամեն ինչ, որ նպատակ ունի կործանել ու քայքայել եր կիրը։ Այդ քաօսին նպաստել է նաև երկրի ղեկավարող դասի երերուն և անհաստատ վերաբերմունքը։

Բոլոր այս ցաւալի և ահաւոր երևոյթները կամաց կամաց առաջ եկան և զարգացան ամբողջ երկրում։ Այժմ հարկաւոր է միայն մեծ ճիգ և աշխատանք քայքայման և կազմալուծման առաջն առնելու համար.

Հարկաւոր է ույժ և վճռական իշխանութիւն, երկրի բոլոր խաւերի մէջ տիրապետող անիշխանութեան առաջն առնելու համար, այլև «գեղեցիկ» խօսքեր, յեղափոխութեան կոչերը, համբոյրներն ու յուզումնալից գրկախառնումներ կոպէկ չարժեն։

Ռուսաստանի նման այլատարր և յետընկած երկրում, ուր դարերի աւանդութիւնները այնքան զօրաւոր են, ուր տակաւին գերիշխում է ասիական ոգին, հրաշք պիտի լինի այդպիսի ըսկզբունքների իրագործումն, որոնք դեռ ևս արևմտեան ամենաքաղաքակիրթ երկրներում իրագործուած չեն։

Բոլոր այս շփոթութիւնների ընթացքում միակ լուսաւոր նշանը կարելի է համարել Կերենսկին, որ օր ու գիշեր աշխատում է երկիրը ազատել կործանման անդունդից Բայց նրա դ՚րքն ու հեղինակութիւնն էլ երերուն էր և կային տարրեր, որոնք պէտք եղած օժանդակութիւնը զլանում էին հասցնել նրան։

Նա ամեն ճիգ ու աշխատանք թափեց մինչև յուլիսի 21-ը լրացնել կառավարութեան կազմը, որ կարողանայ համապատասխան լինել պատմական բացառիկ մոմենտին, բայց չը յաջողուեց և նա ստիպուած եղաւ իր հրաժարականը ներկայացնել և մեկնել Պետրոգրադից

Այդ բանը ահագին հարուած պիտի լինէր Կառավարութեան և երկրի վերակազմութեան գործին. ահա թէ ինչու ժամանակաւոր Կառավարութիւնը վճռեց չընդունել Կերենսկու հրաժարականը և անմիջապէս խորհրդակցութիւն կազմեց բոլոր կուսակցութեանց ներկայացուցիչների մասնակցութեամբ։

Հրաւիրուած խորհրդակցութիւնը իր վստահութիւնը յայտնեց Կերենսկուն և Բան. Զին. ու Գիւղ. Խորհուրդների միացեալ նիստը 47 ձայնով ընդդէմ 46-ի և 42 ձեռնպահի, որոշեց լիազօրել Կերենսկուն կաբինետ կազմելու գործում։ Կաբինետը պիտի բաղկացած լինի այն բոլոր կուսակցութիւնների ներկայացուցիչներից, որոնք համաձայն են կառավարութեան յուլիսի 8-ի նիստի մէջ ընդունուած ծրագրին։

Յուլիսի 24-ին վերջնականապէս կազմուեց կաբինետը, Կերենսկու ղեկավարութեան ներքոյ։ Մինիստրութեան մէջ մտնում են սոցիալիստ կուսակցութիւնների և ժողովրդ. ազատական կուսակցութեան ներկայացուցիչները։

Սպասւում է, որ ներկայ մինիստրական կազմը ազդու միջոցների պիտի դիմի երկրում տիրապետող անիշխանութեանը վերջ դնելու համար։

Ռազմաճակատների դրութիւնը շատ անմխիթար է։ Բոլոր դիրքերը ճնշւած են գերմանացիների կողմից։ Ռուսական զօրքը յետ է նահանջում առանց կռւի։ Զինւորները չեն հնազանդւում սպաների հրամանին։

Երկրի պարէնաւորման գործը վերին աստիճանի յուսահատական է։ Մթերքների սով է տիրում։ Հացի բացակայութիւնը աւելի է ազդում ժողովրդի հոգեբանութեան, քան երկրի ներկայ անիշխանական վիճակը։ Ժողովուրդը, մանաւանդ նրա աշխատաւոր և իրաւազուրկ դասակարգը, նիւթական ծանր վիճակում է ապրում։ Նա ուղղակի տառապում է սովից։ Սովը նրա մէջ ստեղծում է թշնամութիւն դէպի ժամանակաւոր կառավարութիւնը։

Սովը տիրապետում է նաև զօրաճակատում։ Զօրքն ևս տառապում է մթերքների պակասութիւնից։

Սովը, թշնամու լրտեսական ցանցը, զօրքի անիշխանական դրութիւնը—ահա սոսկալի տագնապ, որի մէջ այժմ ապրում է ամբողջ Ռուսաստանը։

Կառավարութիւնը արտաքին և ներքին մեծ աշխատանքներ ունի կատարելիք։

Մէկ կողմից նա պէտք է միջոցներ ձեռք առնի սովի դէմ, կարգաւորի կենսամթերքների բաշխումը, հաղորդակցութեան միջոցները, զօրքի և ժողովրդի պարէնաւորումը, միւս կողմից նա կտրուկ և մահացու կերպով հարւածներ պիտի հասցնի այն զօրամասերին, որոնք ինքնակամ փախչում են թշնամու առաջից։

Լուր է շրջում, որ ռազմաճակատի մի քանի կէտերում կրկին երևացել են եղբայրացման դէպքերը։ Զօրքը ուղղակի ինքնակամ փախչելով դառել է մի վախկոտ հօտ, որ նահանջում է սարսափահար։

Սա մի անագորոյն վիճակ է, որի առաջը որքան կարելի է շուտ պէտք է առնել։

Կառավարութիւնը մեծ տագնապի մէջ է. Ռուսաստանի ճակատագիրը օրհասական օրեր է ապրում։

Յոյս ունենանք,որ նախարարական նոր կազմը պիտի փրկի երկիրը։

Ալ. Մանուկեան

# ԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ

Կեցցէ ազատութիւն... Այժմ, յիրաւի, Ռուսաստանի ընդարձակ երկրի մէջ, մի ծայրից դէպի միւսը, այնքան մեծ է ազատութիւնը, ամեն բերան այնպէս համարձակ կարող է արտասանել իր ուզածը և ամեն կամք, փառք Աստծոյ, այնքան դիւրութեամբ հնարաւորութիւն ունի իր ցանկութիւնները իրագործելու, որ այլևս «կարգ ու կանոն» կոչւող հնամաշ շրջանակը պիտի համարել փտած և միմիայն վառելու սահմանւած աւելորդութիւն։

Եւ այդպէս էլ է։ Ի՞նչ շրջանակի, սահմանների ու պատուարների խօսք կարող է լինել այնտեղ, ուր հանւած է վերջնականօրէն ամեն սանձ, փշրւած ամեն կապանք և տապալած ամեն պարիսպ...

«Այժմ մեր ամբոխը ազատութիւնը գտաւ՝ իր ուզածն անելու, մեր գիւղացիները հա ստանալու են բոլոր հողերը, մեր օրէնքները շուտով աշխարհիս ամենառամկավար օրէնքները կը դառնան և մեր բանակը՝ երկրագնդի ամենաազատ բանակը»... Մի կատարեալ դրախտ. Իդէալական մի դրութիւն, որին շատերը ցնորք էին համարում և միմիայն վառ երևակայութեան արդիւնք։

Այդ, ի հարկէ, աւելի քան լաւ է, աւելի քան գեղեցիկ ու ցանկալի։ «Սակայն ինչու է, որ ուրախ դէմքերի փոխարէն՝ տխուր կիրպարանքներ են երևում ամեն տեղ, հպարտութեան տեղ ամօթը խոնարհեցնում է մեր ճակատը և զուարթ երգերի փոխարէն՝ տգեղ հայհոյանքներ են հնչում երկրի մի ծայրից դէպի միւսը»...

Թէ վերևի կտորը, որ ես չակերտների մէջ եմ առել և թէ այս վերջին տխուր հարցը ես կարդացի այս օրերս մի շաբաթաթերթի մէջ՝ Ի. Վասիլևսկու („Ոչ-բուկվա“) ստորագրութեամբ։

Ռուսական մամուլի մէջ սակաւ էին և այժմ շատ աւելի պակասում են այնպիսի անկեղծօրէն և յանդգնօրէն շիտակ բացող պարբերականներ, որոնք քաջութիւն ունենային, ընդհանուր խանդավառութեան տենդի մէջ. համարձակօրէն մատը դնել տըգեղութիւնների և այլանդակութիւնների վրայ և մատնանշէին այն զզւելի չափազանցութիւնները, որոնք միշտ հակառակ հետևանք են հանում ամենալաւ ձգտումներից անգամ...

Այդպիսի պարբերականներից մէկն է այն շաբաթաթերթը, որից ես հանեցի Վասիլևսկու յօդւածը։ Ով որ հետևի «Ժուրնալ Ժուրնալովի» («Журнал Журналов») վերջին համարներին (№ 17, 18—19), նա կը տեսնի թէ ինչպէս կարելի է, ընդհանուր կուրութեան և ընդհանուր տենդոտ այս օրերի մէջ դեռ ևս պահպանել առողջ ու շիտակ հայեացք իրերի դրութեան վրայ և առանց վախենալու զանազան վառ տիտղոսներից, ասել ճշմարտութիւնը համարձակ, առանց քաշւելու և առանց որևէ վերապահութեան։

Ես գիտեմ, կը լինին առողջներ, թէ այդպիսի պարբերականի հայեացքները «բուրժուական» են լինում, «ոչ-պրոլետարական» և այլն, և այլն, բայց գիտեմ և այն, որ այդ բառերը ոչ հին «ոստիկան» կամ «կարաուլ» կանչելու ոյժը կարող են ունենալ ճշմարտութեան դէմ և ոչ էլ կարող են մրոտել նրա երեսը։ Դժբաղդութիւն է, ի հարկէ, եթէ այդպիսի բառերի տխօրէն գործածողները, 1905-ի դառն դասերից յետոյ անգամ չը վարժւեցին դեռ, որ շատախօսելն ու աղմկելը բաւական չէ ազատութիւնը ամրապնդելու համար և որ, մանաւանդ, ճառախօսելու ընդունակութիւնը չի կարող դիմակաւորել որևէ անբարեկիրթ վարմունք՝ լինի նոյն իսկ հակառակորդի վերաբերութեամբ...

Սակայն ինչու ուրեմն այդ ճառախօսների և աղմկողների դէմքերը սկսում են այժմ երկարել և մռայլել, երբ փետրուարեան շքեղ ու պայծառ օրերից հազիւ մի քանի ամիս անցած, բոլոր ազատութիւնները չափազանց լայնօրէն են իրենց դռները բացել ամենքի առաջ... ինչու է սակայն, որ դժուար է դառնում Ռուսաստանում կեանքը. դժուար ու դառն. որ մեր սրտերը սեղմւում են սոսկումից, ծանր մի փոթորիկի ուրուականը սաւառնում է մեր գլխի վրայով և մղձաւանջային, զարհուրելի մի քայքայման երկիւղը կարկամեցնել է սկսում բոլոր ոգևորւած կանչըռտողների, անհամար խանդավառ ճառողների և մէջտեղ ընկած այդ շուտիկ վազվռտողների շարժումները...

«Կոպէկ չը կար—և ահա մի ռուբլի», այդպէս եմ թարգմանում ես ռուսական „не было ни гроша, да вдругъ алтынъ“ այն առածը, որ մէջ է բերում Վասիլևսկին.—«Եթէ, աւելացնում է նա, նախկին ցար Նիկոլան մեզ այդքան փող „алтынъ“ տար և կամ հենց աւելի քիչ, բայց կոպէկ առ կոպէկ և ոչ թէ յանկարծ—այն ժամանակ, երևի, մենք երջանիկ կը լինէինք և Ռու-

սաստանը խաղաղօրէն ու անփորձ կերպով կը վարժուէր այս բնաշրջմանը։ Այն ժամանակ այլեւս ոչ թալան կը լինէր երևի և ոչ պագրոմ, ոչ կը կողոպտէին սպիրտի գործարանները, ոչ տեղի կունենային զինուորական անկարգութիւններ և ոչ էլ բանուորների սանձարձակութիւն երևան կը գար և կամ «բոլշևիկների» օյինբազութիւններ…

(Շարունակելի) Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

## ԹԻՖԼԻՍԻ ՔԱՂԱՔԱՅԻՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

Այսօր Թիֆլիսում կատարւում է քաղաքային ընտրութիւն։ Ռուսական յեղափոխութիւնից յետոյ այս ամենամեծ իրաւունքներից մէկն էր, որ ստացաւ ժողովուրդը։

Առաջ ընտրութիւններին մասնակցում էին միայն հարուստները և կալուածատէրերը։ Բայց հիմա ամբողջ ազգաբնակչութիւնը, առանց սեռի և դասակարգի խտրութեան կարող է մասնակցել, եթէ 20 տարեկանից վեր է։

Թիֆլիսում գործող բոլոր կուսակցութիւնները և ազգային խմբաւորումները մասնակցում են ընտրութեան։ Ստեղծուել է ընտրական մի չը տեսնուած պայքար։

Եթէ քննութեան առնենք կուսակցութիւնների ներկայացրած ցուցակները, պիտի տեսնենք որ նրանցից ոչ մէկը բաղկացած չէ այն յարմարագոյն և պատրաստուած անձերից, որը ներկայացնում է համար եօթ (№ 7) ցուցակը։

Ժողովր. Ազատ. և Հայ Ժողովր. Ազատ. միացեալ կուսակցութեան ցուցակում նշանակուած անձինք բարձրագոյն կրթութիւն և պատրաստութիւն ունեն։

Կան, որ երկար տարիների ընթացքում աշխատել են քաղաքային գործերում և հմուտ են նրանց (օր. Ս. Յարութիւնեան, Մ. Բերբերեան, Միք. Աթաբէգեան, Վեսելովզորով և ուրիշներ)։

Քաղաքացիներ, եթէ կուզէք որ քաղաքի գործերը լաւ հիմքերի վրայ դրուեն, եթէ կուզէք որ պարենաւորման, մաքրութեան, երթևեկութեան և լուսաւորութեան նման հրատապ հարցերը լաւագոյն կերպով լուծուեն և կարգադրուեն, պէտք է ձեր ձայնը տաք համար եօթ (№ 7) ցուցակին։

Ա. բ. Սարգիսեան

## ՌՈՒՍԱԿԱՆ ԲԻՒԶԱՆԴԻՈՆ

Բնաւ գաղտնիք մը չէ այն ծանրակշիռ վիճակը որու մէջ կապրի Ռուսաստանը։ Մայրաքաղաքի մեծ թերթերուն մէջ արդէն կարտայայտուին այն մասին թէ «իրականացնելու համար ազգերու ինքնորոշումը, երէկուան կառավարութիւնը ետ կը քաշէ զօրքը ամբողջ Ուքրայնիայէն, որպէս զի անիկա իր ուզած ձևով ինքնորոշուի։ Ուքրայնիան կերևայ թէ Աւստրիոյ հետ կուզէ ինքնորոշուիլ…»

Ամեն պարագայի մէջ, Ռուսիոյ զինուորական ու քաղաքական դրութիւնը շատ անակնկալներու դուռ պիտի բանայ, ու բնորոշ երևոյթը այն է որ՝ ազգաբնակութիւնը ոչ մէկ կերպով կը հետաքրքրուի՝ երկրի դրութեամբ. ազգաբնակութիւնը՝ որ իբր Ռուսաստանի իսկական կամքն ու կառավարութիւնը աւելի արժանի շահագրգռութիւնը պիտի ցոյց տար բնականօրէն։

Սակայն ամեն մարդ, Ռուսաստանի մէջ, կարծես թէ ինքն իրմով կզբաղի, կամ շատ-շատ բնազանցութեամբ…

Ռուսաստանը, այս պահուս, ինծի կը պատկերանայ իբրև Բիւզանդիոն մը՝ որուն պարիսպներուն տակ Մէհմէտ Բ. մը բանակած է։

Պոլսոյ առումի ժամանակ, յոյները կրօնական վէճերով զբաղած, կլանուած, տարուած էին. կարծես մարդոց հոգը անգամ չէր բարբարոսութիւնն ու մահը, որ կը հսկէր իրենց դըրան առաջ…»

Մի՞թէ նոյն տպաւորութիւնը չըներ Ռուսաստանը, իր «սոցիալական յեղափոխութեան» ձգտումներով, ընտրական պայքարներու խելացնոր հետաքրքրութեամբ, մայթերու փոլիթիքոսութեամբ։ Ես կերևակայեմ, թէ գերմանական բանակներու կողմէ գրաւուած քաղաքներու մէջ, նոյն պատկերն է եղեր գրաւման նախօրդայնին…»

Ես չեմ ուզեր ըսել թէ ազգերու ազատութեան թռիչքը, տառապող մարդկութեան երազները և յոյսերը պէտք չէ արտայայտուին. ոչ, այդ չեմ ուզեր ըսել, այլ շատ պարզ է, որ այդ ամենը օրինական են և հասկանալի, բայց այն մարդիկն ու այն ժողովուրդները, որոնք իրենց ձեռք բերած ազատութեան և իրաւունքներուն համար հպարտ են, որոնք կզգան թէ ինչքան սուղ է այդ ամենը իրենց համար, այս դժբաղդութեան աշխարհին մէջ, գոնէ ֆիզիքական գիտակցութիւնն ունենային այն տագնապալից վտանգին, որուն մօտենալը կը տեսնենք գերման երկաթէ կռունկներուն հետ…» Այդ վտանգը իրեն հետ կը բերէ ամենադէշ տեսակէն ստրկութիւն, պատերազմական դրութեան պատրուակով «աւելի շատ ժամանակ» սպառել կուտայ, որուն քառորդ ժամանակը չեն ուզեր սպառել իսկապէս ռուսական ժողովուրդները…»

Գերմանական բանակը, գերմանական միլիթարիզմը մտած տեղը անմիջապէս պիտի վերածէ ստրկանոցի, գերման միլիթարիզմը շատ լաւ միջոցներ գիտէ կազմակերպելու ամենաանկազմակերպ բանակներն անգամ, ամենամոլեռանդ օսմանցին անգամ գերմանական միլիթարիզմին ձեռքը յանձնեց իր կրօնական օրէնքներն անգամ, Շէրիաթի տրամադրութիւններն ու Շէրիի դատարանները… Այդ նոյն միլիթարիզմը կարող կըլլայ շատ աւելի դիւրաւ, իր ձեռքին մէջ սեղմել սոցիալիստական ամեն մոլեռանդութիւն։

Ներքին այս կազմալուծումը, անհամակերպութիւնը և նեղ մտայնութիւններու մոլեռանդութիւնը, հայրենիքի վտանգի պահուն չափազանց աղէտալի կը հնչէ և կարելի է շատ որոշ լսել այդ հնչումին մէջէն զարկեր՝ որոնք Ռուսաստանի համար աղէտալի ու ճակատագրական կը շեշտուին։

Կառավարութեան վերջնական կազմակերպութիւնը, որ տեղի ունեցաւ այս շաբթու, կը յատկանշէ ճիգ մը՝ որով երկրի որոշ գիտակից տարրերը կուզեն փրկել դրութիւնը։ Վճռական և արագ որոշումներու շարքեր, որոնք մէկ երկու օրէ ի վեր զգալի են դարձած, պարզ է, որ կառավարութեան գլուխ անցած տարրերը կը ջանան դարմանել այն քայքայումը, որու մէջ կը գտնուի բանակը, երկիրը և բոլոր ֆրոնտը։ Սարսափելի բան էր կարդալ անցեալ շաբթուան ընթացքին կազմալոյծ կերպով փախչող բանակի մասին։ Այժմ, գործող բանակէն եկած հեռագիրները ազդու հրամանները կը հաղորդեն, որոնցով ջախջախիչ պատիժներ կը տնօրինուին դաւաճաններու հանդէպ։

Երազատեսներու բեմէն քաշուիլը, գլխաւոր դրուականներէն մէկն է այն ներդաշնակութեան, որով Ռուսիան պիտի կարողանայ ընթանալ իր դաշնակիցներուն հետ զուգընթաց։

«Յեղափոխութեան դաւաճանները պիտի անխնայ պատժուին ու զրկուին այն բոլոր բարիքներէն, ինչ որ ձեռք է բե-

րեր ռուսական ժողովուրդը այնպիսի դժուարութիւններով», առա այսպէս կըսէ քանակէն եկած հեռագիր մը, 31 րդ զօրաբանակի հրամանատարէն ստորագրուած, որուն սրտագին կընկերանայ գինուորական կոմիտէն։

Նորակազմ Նախարարութիւնը, որ շատ հաւանական է դարձեալ վերակազմուի, ու հոն աւելի շատ տեղ գտնեն կրկին հեղինակաւոր տարրերը, որոնց ձեռքը միայն կարող է յանձնուիլ քառներորդ դարու հանրապետութիւն մը, այդ նորակազմ կառավարութիւնը, եթէ գերագոյն հեղինակաւորութեամբ մը, կարողանայ սանձել ու կառավարել երկիրը. պուցէ կարելի ըլլայ փութացող կործանման ու քայքայման առաջն առնել։

Սակայն, ամեն պարագայի մէջ երեւոյթը փաստ է, ու լաւատեսութիւն ներշնչելէ շատ հեռու, Ռուսաստանը տակաւին շատ կը նմանի հին օրերու Բիւզանդիոնի, անիկա պէտք ունի հեղինակաւոր ձեռքի մը, որպէս զի մէկ շարժումով մը, հսկայ երկիրը մազերէն բռնած, վեր քաշէ անդունդէն։

Լ. Թիւթիւնճեան

ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄԸ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

(ՀԱՅ ՈՐԲԵՐԻ ՖՈՆԴԸ)

Մանչեսթըրի լորդ քաղաքագլխի նախագահութեան ներքեւ կազմուած է մի ընկերութիւն, հիմնուած 1916-ին, որը ի նպաստ հայ որբերին մի կոչ է հրատարակած, որի թարգմանութիւնը տալիս ենք ներքեւ.

«Պատերազմի նախօրեակին օսմանեան կայսրութեան մէջ կային 1,800,000-ի մօտ հայեր, որից 600,000-ը տարագրուած թիւրքերի ձեռքով իրենց բնակութիւնից հեռու եւ ապրում են թշուառութեան մէջ և 600,000-ն էլ բնագաւառում թողնուած կամ նահանջած են դէպի մեր դաշնակից Ռուսիոյ սահմանները։ Այս զարհուրելի դէպքերի նկարագրութիւնը գտնւում է «Կապոյտ Գրքում» խմբագրուած Լորդ Բրայսի կողմից։ Գիրքը ներկայացնում է աղէտների մի մեծ շարք, որ այս պատերազմում ոեւէ ազգի չի վիճակուած բայի հայ ազգից։

Թիւրքերի կողմից տարագրուած հայ փախստականների օգնութիւնը մեր հասողութենէն վեր է, բայց շատ բան կարող է լինել և եղած է նրանց, որոնք նահանջած են ռուսական սահմանները։ Մեր մարդասիրական պարտականութիւնն է անել ինչ որ հնարաւոր է, որովհետեւ հայերը զինաւորուել են ոչ թէ որպէս ճորտ, այլ որպէս դաշնակիցների դատի բարեկամները։ Տաճկահայերը, այլ որպէս դաշնակիցների դատի բարեկամները։ Տաճկահայերը պիտի շահէին, եթէ իրենց մասնակցութիւնը չը բերէին պատերազմին։ Նրանք չէզոքութիւնը պահելու ամեն պատեհութիւնը ունէին, բայց չարին։ Հայերը մեծ թուով կամաւոր գրուեցին Ռուսիոյ մէջ և կրկնակիօրէն գնահատելի ծառայութիւններ մատուցին դաշնակիցների գործին։ Այս օգնութեան շնորհիւ էր, որ ռուսները ետ մղեցին թիւրքերին, որոնք իրենց վրէժխնդրութիւնը թափեցին հայ համայնքի վրայ։

Մօտ 300,000 հայ փախստականներ ապաստանած են Կովկաս և գտնւում են նիւթական ծանր կացութեան մէջ. նրանց անհրաժեշտ է նիւթական օգնութիւն հասցնել ամեն կերպ։

Լորդ քաղաքագլխի ֆոնդը վերջերս հանգանակած է մօտաւորապէս 8000 դոլար։ Որքան որ այս գումարը կարեւոր է, բայց փախստականների ծով կարիքներին անկարող է բաւարարել։ Մենք այժմ կոչ ենք անում բրիտանական ժողովրդի առատաձեռնութեան, մենք ունենք Լորդ Բրայսի և Մանչեսթըրի ֆոնդի ուրիշ նուիրատուների աջակցութիւնն ու քաջալերութիւնը»։

Նոր լինելիք ֆոնդը պիտի յատկացուի այն որբերի կարիքներին առանձնապէս, որոնք չունին հարազատ խնամողներ։ 20,000 փախստական որբերից կէսից աւելին անխնամ, մերկ և անօթի են. որբանոցների շինութեան, կահաւորման և կերակրման համար ամսական մօտ 50 ռ. ծախք կը լինի։

Այս ծախսերը հոգալը բոլորովին վեր է հայկական կազմակերպութիւնների և Կովկասում եղած զանազան ֆոնդերի կարողութիւնից։ Նրանք ստիպուած են կոչեր հրատարակել և դիմել ուրիշ երկրների հասարակութեան օժանդակութեան։ Բայց դժբաղդաբար իրենց կոչերը տակաւին մի շօշափելի արդիւնք չունեցան և մեծ մասամբ մնացին անարձագանգ։

«Հայ երեխաները—գրում է Բաթումի բրիտանական հիւպատոս Մստր Փ. Սթէվընս, արտաքին գործերի պաշտօնատան ուղարկած մէկ տեղեկագրի մէջ—սոսկալի կացութեան մէջ են. Նրանցից շատերը սոված են և այնչափ հիւծուած, որ կմախքների են նմանում աւելի, քան մարդկային կերպարանքի։ Աւելի ուշ. յունուարի 11-ին Մստր Ջ. Ֆ. Հրէյսի—ամերիկեան միսիոնարների — հեռագրեց, որ հազարաւոր որբեր կը կարօտին անմիջական օգնութեան և որ եղած են պարագաներ, որ սովամահութեան դէպքեր են առաջացել։ Ներկայ կոչը այս թշուառ որբերի համար ենք անում։ Մանչեսթըրի հայերը, հակառակ այն բանին, որ իրենց առեւտուրը վնասուած է պատերազմից սաստիկ կերպով, վերջերս հաւաքած են 1500 դոլար, որը ղրկուած է Հայաստան այս նպատակի համար։

Ֆոնդերը պիտի տնօրինուին «Պատերազմից վնասուածներին օգնող Հայկական Կենտր. Կոմիտէի կողմից»։

Լորդ քաղաքագլխի ղեկավարութեամբ կազմուած ֆոնդի քարտուղար գերապատիւ Հարոլտ Պըքսթընը մեզ գրում է՝ հանգանակուած գումարը ուղարկել Հայկ. Կ. Կոմիտէի նախագահ պ. Սամսոն Յարութիւնեանին։ Պ. Յարութիւնեանի Կոմիտէն մասնագիտութիւն է ձեռք բերած որբանոցային գործերում։ Նրա տրամադրութեան տակ եղած որբանոցները, որ պատած եմ անձնապէս թէ տեղին մէջ (Թիֆլիս) և թէ Թիֆլիսի շրջակայքը, աւելի լաւ կարգադրուած են։

Բաթումի բրիտանական հիւպատոս Մստր Սթէվընսն ալ լիովին վստահութեամբ յանձնարարում է վերոյիշեալ Կոմիտէն։

«Մենք արինք այս կոչը լաւ գիտենալով, թէ որքան ծանր են բրիտանական ժողովրդի վրայ եղած խնդիրները կամ հոգսերը այս պարագայիս. բայց և լաւ գիտենք, որ մարդկային օգնութեան խորութիւնն եւ անսահման է»։

Կոչը կրում է լորդ քաղաքագլխի, Մստր Ջօն Մուգլի, Մստր Մըքէյվի և պ. Մանաշեանի ստորագրութիւնները։

Անգլ. թարգմ. Ա. Սաֆեան

# ԻՆՉՊԷՍ Է ՍՏԵՂԾՒՈՒՄ

## ԹՇՆԱՄՈՒԹԻՒՆԸ ՀԱՅ ԵՒ ԹԻՒՐՔ ՀԱՐԵՒԱՆՆԵՐԻ ՄԻՋԵՒ *)

Բիճը՝ սատանային խաղընկեր և աշխարհահռչակ մասնիկ ըլլալը գիտէ։ Բայց անոր այդպիսի յայտնի համբաւ ձեռք բերելուն և ինքզինքը աշխարհին ծանօթ դարձնելուն գաղտնիքը չըկարողանալով իմանալ՝ վերջապէս շատ փնտռելէ յետոյ կը գտնէ սատանային։

Սատանան շատ ուրախացած Բիճին տեսութենէն՝ կ'ըսկսի խօսակցել.—«Բարով եկար, գմուկս, շատ ուրախ եմ քեզ տեսնելուս համար. ըսէ նայիմ, ինչու եկար, եթէ դժուար ըմբռնելի խնդիր մ'ունիս՝ ըսէ, պատրաստ եմ վճռելու»։

«Ո՞վ, դու մատնութեամբ և ոճրագործութեամբ յայտնի վարպետ—կը պատասխանէ Բիճը—աշխարհիս մէջ մեծ հռչակ ունենալդ բոլորին քաջ յայտնի է, չկայ տեղ մը, ուր գտնուի մէկ մը քեզ չ'ճանչցող, այնպէս չէ՞»։

Սատանան.—Այո, այո, արար աշխարհի մէջ ամբողջ մարդկութիւնը գիս՝ ինձմէն աւելի լաւ գիտէ ու կը ճանչնայ, այդ բանը ես ինքս ալ կը խոստովանիմ»։

Բիճը.—Ես ալ իրաւունք ունիմ խաղընկերութեան և ատելութեան մէջը. բայց ինձի մտածել տուող բան մը եթէ կայ, այն ալ այս է, որ ինչու համար ես ալ չէ թէ քեզ, այլ գոնէ քո հարիւրէն մէկուն չափ աշխարհէն երեւելի և անուանի չեմ ճանչցուեր։ Արդ, ո՞վ իմ միակ պարծանքս, ի սէր մեծութեանդ, ըսէ տեսնեմ, պատճառն ինչ է, ինչ միջոց ի գործ դրիր, որ այսպէս հռչակ ունեցար։ Այստեղ գալուս միակ պատճառը այդ միջոցներն ու կանոններն իմանալն է, ձեռքիդ փոխարէն՝ ոտքդ կը համբուրեմ, յայտնէ ինձի հարկ եղածը և ազատէ զիս մտածմունքներու ծովէն, ուրիշ ոչինչ»։

Սատանան.—Զմուկս, համաձայն ծրագրիս, իմ օրէնքներս ու գաղտնիքներս իմանալ ցանկացողները պէտք է առաջին անգամ ցոյց տան ինձի իրենց խաղընկերութեան ու մասնիչութեան մէջ ունեցած վարպետութիւնը, երկրորդ՝ անիրաւացիօրէն անմեղ արիւններ թափելուն և շէն ու հարուստ երկիրները աւերակի վերածելուն մէջը՝ յայտնեն իրենց պատրաստակամութիւնն ու հաւատարմութիւնը, ոչ թէ չոր ու ցամաք խօսքերով, այլ՝ կենդանի գործով։ Վերոյիշեալ երկու պայմաններս ընդունելով ինքզինքդ եթէ ինձի ճանչցնել կուտաս, ես պատրաստ եմ ամենայն ուրախութեամբ յայտնելու և սորվեցնելու քեզ գաղտնիքներս»։

Բիճը.—«Ո՞վ դու խաւարարութեան մէջ մէկ հատիկ լոյս, ամեն մի հրամանդ ուրախութեամբ կ'ընդունեմ, իբրև քո նուաստագոյն ծառան կ'երդնում ամենայն պատրաստակամութեամբ և հաւատարմութեամբ կատարել յիշածդ պայմանները»։

Սատանան.—Շատ լաւ, վստահ ցոյց տուածդ հաւատարմութիւններին՝ կը հրամայեմ հիմակուանէ իսկոյն և եթ մի շաբթուան մէջ մտնել ժողովրդին մէջը, երկու հարեւան ազգերու մէջ խռովութիւն սերմանել, որոշեալ շաբաթը լմնալէն վերջը նորէն կը տեսնուինք, կը խօսինք այդ առթիւ և միմեանց տեղեկութիւն կուտանք։

Բիճը.—Շատ գեղեցիկ, օ՛ն ուրեմն, դէպի գործ...։

Սատանան իր նոր՝ բայց ճարպիկ երեւցող աշակերտին խռովարարութեան սուր զէնքերով զինուած ճամբու դրաւ, ողջ իրթ և գործի յաջողութիւն մաղթելով անոր։

Մտածմունքներու անյատակ ծովերուն մէջ խորասուզուած՝ Բիճը փոքրիկ ճամբորդութենէ մը յետոյ կը հանդիպի քրիստոնէաբնակ քաղաք մը։ Սաստիկ լաց ու կոծով մը կը մտնէ քաղաքը և «հա՜յ հարա՜յ.. մեռա՜յ, այրուեցա՜յ, խաշուեցա՜յ... ի սէր Աստուծոյ պուտ մը ջո՜ւր...» բարձրագոչ աղաղակելով գլխի մազերը կը փետտէ։

Քաղաքացիները այդ անսովոր և յանկարծ երեւցող աղաղակի վրայ կը թափին Բիճին շուրջը և կը հարցնեն անկէ՝ ինչ պատահելուն մասին։

Բիճը.—«Տգիտութեան ծոցին մէջ ընկղմած և միամտութեան քնոյ մէջ մրափող խե՜ղճ կրօնակիցներս, չգիտէ՞ք դեռ ինչ է եղեր, ա՜խ թշուառներ մեր բանը լմնցած է այլեւս, կը լսէ՞ք այս հարահրոցը...»։

Ո՛չ, ո՛չ,—կը յարէ ժողովուրդը, չենք լսեր, ինչ է պատահեր։

Բիճը.—«Իսլամները կը զինուին, գիտէ՞ք, իսլամները քրիստոնեաներուն կը կոտորեն, կը հասկնա՞ք, իսլամները կը պատրաստուին, չէ՞ք մտածեր՝ կրօնակիցներ, ես ճիշդ հիմա, աս մօտակայ իսլամաբնակ քաղաքէն շատ տանջանքներէ յետոյ հազիւ կարողացայ օձիքս ազատել և անվնաս տեղս հասնել։

«Իսլամները կը կոտորեն քրիստոնեաներին, երեք միլիոնոց բանակ մը զինուած 800 հրաձիգներով, երկու հազար ընդծովեաններով, հարիւր հազարաւոր թնդանօթներով, հրացաններով և մեթրալիօզներով՝ այսօր-վաղ կը յարձակուեն ձեր վրայ և ըստ իրենց գաղտնի որոշման՝ աշխարհի բոլոր քրիստոնեաներուն պիտի կոտորեն։ Օ՛ն, ուրեմն մի մեռցնէք ժամանակը, պատրաստուեցէք, այս լուրը տարածեցէք քաղաքի բնակչութեան մէջ, որպէս զի կարողանանք կազմ ու պատրաստ դիմադրել սպառնացող վտանգին, որը շատ շուտով կուգայ, ճիշդ այս գիշերը, չը լինի թէ կրակներ վառէք...»։

Ժողովուրդը ահ ու սարսափէն սոսկալի իրարանցում կ'ընէ, ուժգին կերպով կ'աշխատէ ինքնապաշտպանութեան գործով։ Յանկարծակի չը գալուն համար քաղաքին եզրերը պահակներ կը դըրուեն։

Բիճը քրիստոնեայ ժողովրդին այսպէս ոտքի վրայ հանելէ յետոյ, կաճապարէ, կերթայ մօտակայ իսլամաբնակ քաղաքը։ Կը հասնի հոն, այս անգամ տարբեր ձայնով մը կը սկսի պոռալ, կանչել,— «Հա՜յ-հարայ, վառուեցայ, այրուեցայ, հասէք օգնութեան»։

Իսլամ ժողովուրդը այս աղեխարշ, սրտամորմոք ձայնին վրայ կը դիմէ դէպի Բիճը, ու «Աստուած իմ, ինչ եղած է» ըսելով կը հարցնէ։

Բիճը.— «Սիրելի եղբայրներ, աստնկ ալ խայտառակութի՞ւն, քրիստոնեաները իսլամներուն կը կոտորեն, անոնց տուները այրելով՝ ապրանքները կը թալանեն, երիտասարդ կանանց պատիւը կը բռնաբարեն. աստնկ ալ թշնամութիւն կը լինի՞։ Համբերութեան բաժակը լեցուած է այլեւս, դիմանալ այս չարիքին՝ անկարելի է։ Քրիստոնեաները ոտից-գլուխ զինուած՝ իսլամներուն կը ջարդեն։ Ուրեմն, պատրաստուենք մենք ալ, հաւատացէք, որ այս գիշեր անոնք պիտի յարձակուեն մեզ վրայ»։

Իսլամ ազգաբնակչութիւնը վաղահաս վտանգէն սարսափահար կաղաղակեն. «Եա րապպ, ազատէ զմեզ այս փորձանքներէն»։

---

*) Մեր աշխատակից Գ. Մանասեան այս յօդուածը թարգմանել է Բագւում հրատարակուող «Բասիրաթ» թիւրք թերթից։ Յօդուածում յիշատակուած «Բիճը» և «Սատանան» իրականութեան մէջ այն սեւ տարրն է, որ աշխատում է ամեն ժամանակ խռովութիւն սերմանել դարերով իրար հետ ապրող հայ և թիւրք հարեւան ժողովրդների միջեւ։ Հին ռեժիմի ժամանակ այդ սեւ տարրը արտայայտւում էր Կովկասեան բիւրոկրատիայի միջոցով, այժմ արտայայտւում է տարբեր ձեւի և գոյնի տակ, այդ թող լաւ հասկանան հայ և թիւրք ժողովուրդները, որոնք իրար դէմ թշնամանալու ոչ մի պատճառ և հիմունք չունեն։

Ծանօթ. Խմբ.

Ասոնք ալ իրենց հերթին զինուած, կազմ ու պատրաստ՝ քաղաքէն դուրս պահապաններ կը դնեն։

Այդ միջոցին քրիստոնեայ քաղաքի պահակները կը հանդիպին հակառակ կողմի պահակներուն ու կը սկսին կրակ բանալ միմեանց վրայ։ Պահակներէն երկուքը ետ ետ փախչելով կը յայտնեն ժողովուրդին, թէ խալաֆները կը յառաջանան։ Երկու կողմերն ալ քիչ-քիչ իրար մօտենալով՝ կը սկսի ծանր ու արիւնահեղ կռիւը։

Բիճը, հաշտ, միամիտ ու բարի դրացիութեամբ ապրող երկու ազգերը հանելով իրար դէմ, թափուած անմեղ արիւնի ճապաղիքին վրայէն թռչելով, ամենայն ուրախութեամբ սատանային գտնելու համար ճամբայ կիյնայ։

Վերջապէս կը գտնէ սատանային աւերակի մը վրայ. ինքնագոհ և պարծենկոտ թօնով մը կը հարցնէ. «Ի՞նչ կընես, յարգելի վարպետ»։ —«Զաւակս, կը պատասխանէ սատանան, քեզմէ բաժնուելուս պէս, ամբողջ երկիրները պտտեցայ՝ բան մը չկըրցայ ընել. միայն թէ երկար չարչարուելէ յետոյ, հազիւ հազ մի մարդ ու մի կին ձեռք ձգեցի, ասոնք իրար հետ էին՝ երբ դու եկար»։

Բիճը այս անպատկառ խօսքին վրայ՝ կը թքնէ սատանային երեսը, երկու ձեռքով ուժգին հարուած մը կիջեցնէ անոր գըլխուն ու կըսէ.— «Աստուած պատիժ տայ, մի շաբթուան մէջ տեսած գործդ այդ է միայն, քոռ սատանայ, սատկած երեւելի ես դարձած աշխարհին, անկիրթ մարդ։ Ես մի շաբթուան մէջ խաղաղ ու հանգիստ ապրող երկու հարեւան ազգերուն մէջը ատելութեան սերմը ցանելով չէն երկիրները աւերակի դարձուցի, իսկ դուն հազիւ կարողացեր ես մի մարդ ու մի կին ձեռք ձգել. ամօթ և նախատինք քեզ և քու աշխարհահռչակ անուանը»։

Սատանան.—«Զաւակս, մի քիչ համբերէ, սառնարիւնութիւնը մի կորցներ, բռնած իւրաքանչիւր գործիս մէջը կայ ոչ թէ մէկ՝ այլ հազարումէկ հրաշք. քչիկ մը համբերէ, ով իմ արժանիքս աշխարհքի մէջ կայծակի նման տարածող անդրանիկ զաւակս։ Եթէ ես սանկ մարդիկը այս տեսակ կանանց հետը յարաբերութեան մէջ չդնէի, այն ատեն քեզ նման մատնութեան եզակի, խռովարարութեան մէջ՝ հմուտ—օգնական զաւակներ ինչպէս պիտի ծնէին...»։

Բիճը առանց մի խօսք փոխանակելու կը հաստատէ սատանայի խօսքը։

Թուրք. թարգմ. Գ. Մանասեան

„Բասիրաթ“

ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

Թաւրիզ, 18 յուլիսի 1917

Քաղաքական և հասարակական կեանքը Թաւրիզում շատ անմխիթար է։ Ռուսական թղթադրամի կուրսը ամեն օր ընկնում է, մէկ ռուբլին արժէ 14 կոպէկ։ Տեղական պարսիկները դատարկում են խանութները, վախենալով Ղազուինի և Ուրմիայի թալանի դէպքերից։

Վերջերս Մարաղայում երևան են եկել չորս հայ շանտաժիստներ, որոնք կամաւորական խմբեր կազմելու անունով՝ տեղական հարուստ հայերից պահանջում են 30 000 ռուբլի զէնքի սպառնալիքով։ Թանկութիւնը տեղս առասպելական չափերի է հասել. հացը շատ դժուարութեամբ է գտնւում. հացթուխների մեծ մասը չեն գործում ցորեն չը լինելու պատճառով. եթէ այսպէս շարունակուի՝ սովը անխուսափելի է։

Երուանդ

# Գեղարուեստ

ԷԼԻ ԻՄ ՄՈՒՍԱՅԻՆ

Երբ օտարի հետ հեռուն
Դու անցնում ես գիշերը,
Սիրտս սիրով քո եռուն
Միշտ խոցում են փուշերը։

***

Ա՜խ, էլ չ՚անցնես քրքիջով
Գիշերները նորա հետ.
Չէ՞ որ, Սիրուն, քո շնչով
Ես ապրում եմ բուրաւէտ։

***

Չէ՞ որ ինձ հուր կարօտով
Կ՚այրեն թովիչ աչերդ,
Չէ՞ որ անցնիս իմ մօտով
Կը համբուրեմ փէշերդ։

***

Հերիք, Սիրուն, մօտեցիր,
Ականջ դիր դու երգերիս,
Սիրտս բանամ, ներս նայիր,
Դեղ դիր, ամա՜ն, վէրքերիս...

17 յուլիսի, Շուլաւէր Վահան Միրաքեան

# Քրօնիկօն

Այսօր Թիֆլիսի 83 մասերում տեղի են ունենալու քաղաքային դումայի իրաւասուների ընտրութիւնները։

—Ժամանակաւոր Կառավարութեան որոշումով Սահմանադիր Ժողովի համար Անդրկովկասը լինելու է մի ընտրական շրջան։

—Հայրատ գիւղում վախճանուել է «Հովիտ» շաբաթաթերթի խմբագիր Ն. ա. ք. Երզնկեանը։ Խմբագրութիւնս յայտնում է իր խորին ցաւակցութիւնը։

—Սահմանադիր Ժողովի ընտրական աշխատանքների համար օգոստոսի [illegible]-ից բացուող 2-օրեայ դասընթացքներին գրուել են 130 երկսեռ ունկնդիրներ։

—Ներկայ թանկութեան պատճառով «Հովիտ» շաբաթաթերթի հրատարակութիւնը ժամանակաւորապէս դադարեցւում է։

—Վստահելի աղբիւրից «Հորիզոնին» հաղորդում են, որ Զխէյիձէն մի հեռագիր է ստացել տեղիս Թիւրքական կոմիտէի նախագահ Բամաթովի ստորագրութեամբ, որով վերջինս բողոքում է թժ. Զաւարեանի Հայաստանի գրաւուած մասերի կառավարչի օգնական նշանակուելու դէմ և պահանջում է, որ մի Թիւրք օգնական էլ նշանակուի։

—Զինւ. և բանւ. պատգ. խորհրդի զինուորական սեկցիան

որոշել է հրաման տալ գարնիզոնին, որ մթերքներ գնելիս, գինուորներն էլ պէտք է կանգնեն քաղաքացիների հետ հերթի։ Միաժամանակ որոշած է առաջարկել քաղաք. պարենաւորման կոմիտէին, որ մթերքների մատակարարման գործը կանոնաւորուի և ծառայողների թիւն աւելացուի։

—Սահմանադիր ժողովի նահանգական ընտրական կոմիտէի նախագահներ են ընտրուել Դ. Մ. Պապով և Ա. Ի. Արզումեան, աւագ քարտուղար՝ Ա. Ս. Բաբեան, քարտուղար՝ Ա. Լ. Շատինսկի։ Կոմիտէի ամսիս 25-ի նիստում որոշուած է Անդրկովկ. Առ. Կոմիտէին առաջարկել գաւառական ընտրական կոմիտէների կազմը լրացնել քաղաքական կուսակցութիւնների ներկայացուցիչներով։

—Ամսիս 24-ին կայացաւ քաղաքային դումայի հին կազմի վերջին նիստը, որը զբաղուեց գլխաւորապէս դումայի կատարած գործերով և նրա գնահատութեամբ։

—Մակուի երկաթուղու կառավարիչը հեռագրով յայտնել է Անդրկովկասի Առ. Կոմիտէին, որ Բայազիդ կայարանի վրայ յարձակուել են 250 քրդեր, որոնց դժուարութեամբ հնար է եղել յետ մղել։ Քրդերը յարձակւում են գործում նաև քաղաքի վրայ և սպանում են զինուորներին ու կոզակներին։

—Ստացանք Ա. Չօպանեանի 1) «L'Armenia sotto il giogoturco» (իտալ.) 39 էջ, տպ. Տուրինում, 1917 թ.։ 2) «Per la Nazione Armena» 31 էջ, տպ. Տուրինում, 1917 թ.։ 3) Archak Mahdesian. «Armenia» her culture and aspirations», 20 էջ։

## Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց արեւմտեան ճակատում*—ռուսական բանակը նահանջում է։ Յուլիսի 25-ին Բրոդիից հարաւ-արեւմուտ, Դուբէ և Զարկով գիւղերի մօտ թշնամին սկսել է թնդանօթի ուժեղ կրակ թափել։ Զբրուչից արեւմուտք թշնամին հնձում է այն ցանքերը, որոնք կատարուել էին ռուս ժողովրդի ձեռքով Սերետի հովտում, մանաւանդ Սուզովա գետի ափերին թշնամին շարունակում է նեղել մեր զօրամասերը։ Թշնամին գրաւեց Վոսկոուցի, Սատուլմարի, Բատտուրց, Բուրլան և Բլիտ գիւղերը։

Յուլիսի 24-ին Զբրուչ գետի մօտ ուժեղ կռիւ տեղի ունեցաւ, մերոնք յաջող հարուածներ հասցրին թշնամուն։ Մեր զօրքերը գրաւեցին երկու կարեւոր դիրք, բռնեցին 290 գերի և վերցրինք 2 գնդացիր։

Վլադիմիր-Վոլինի ուղղութեան վրայ թնդանօթամարտ է։ Թշնամին գրոհով գրաւեց Սեմերինկի գիւղի մեր դիրքերը, բայց հակահարձակումով յետ շպրտուեց։ Բրոդիի ուղղութեան վրայ, Բոլդուրի շրջանում թշնամու հետախուզող խմբերը ձեռքի ռումբերով նեղեցին մեր զօրամասերը և գրաւեցին խրամատները, հակայարձակումով մենք վերականգնեցինք մեր դիրքերը։ Զբրաժից արեւմուտք թշնամին յետ մղեց մեր զօրամասերը։ Զբրուչի ափին յամառ կռուից յետոյ, մերոնք անցան յարձակման և քշեցին Բարիշկովից և Վիգոդա գիւղերից։ Այս կռւում գերի ենք վերցրել 7 սպայ և 300 զինուոր. խլել չորս գնդացիրներ։ Սերետից հիւսիս-արեւմուտք յետ մղեցինք հակառակորդի յարձակումները։

*Ռումանական ճակատում*՝ թշնամին կռւում տիրեց Կիմպոլունկի ուղղութեամբ գտնուող Մոլիտ կայարանի բարձունքներին։ Կապիտան Լուշկենի հրամանատարութեան տակ գտնուող գունդը հերոսական դիմադրութիւն ցոյց տուեց թշնամուն և փախուստի մատնեց նրան։ Սեմինէի շրջանում յետ մղուեցին թշնամու յարձակումները։ Բիստրից գետի ափին, Կոտերգաչ—Պօեանի—Դուաչէի շրջանում մեր մի դիվիզիայի երկու գնդերը կամովին հեռացան դիրքերից առաջ բերելով ընդհանուր նահանջ։

Ֆոկշանի ուղղութեան վրայ թշնամին յարձակւում սկսեց երկաթուղագծի ընթացքով։ Այդ գծի մեր դիրքերը անցան թշնամու ձեռքը։

Կիմպոլունկի և Լա-Մունտելի շրջաններում թշնամին ուժեղ յարձակումների դիմեց, որոնցից մի քանիսները յետ մղեցինք։ Ֆոկշանի գծի վրայ հակառակորդը սկսում է առաջանալ և մեր զօրամասերը յետ են քաշւում։

*Կովկասեան ճակատում*՝ Թոշաբի շրջանում (Վանի նահանգի մի գաւառամասը) մեր զօրքերը ցրուեցին քրդական մի աւազակախումբ։

*Փրանսիական ճակատում*՝ Շամպայնում սոսկալի թնդանօթամարտ է։ Բելգիայի մէջ ֆրանսիական գնդերը դանդաղօրէն առաջանում են, բրիտանացիք օգնում են նրանց։ Մաասի երկու ափերին կռիւ է։

*Չինաստան*.—Յուլիսի 26-ին կաբինետը նախագահի հաստատման ներկայացրեց իրենց միաձայն որոշումը—պատերազմ յայտարարել Գերմանիային։

*Ամերիկա*.— Միացեալ-Նահանգների կառավարութիւնը որոշել է գրաւել Ամերիկեան նաւահանգիստներում գտնուող բոլոր նաւերը։ Պատրաստւում է բանակ ֆրանսիական ափը դուրս հանելու համար։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1